Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### Նյութեր զրույցների համար


Էջ

*Ա. Գ. ԵՍԱՅԱՆ— Սովետական Միության Կոնստի-տուցիան* . . . . . . . . . . . . . . . 1

*Պարտիայի 20-րդ համագումարը նշանավորվեց նոր հաջողություններով* . . . . . . . . . . 9

*Վ. ԽՍԿԱՆԴԱՐՅԱՆ— Առաջավոր փորձի դպրոցը* . 16

Ագիտացիոն աշխատանքի փորձից

*Գ. ԱՎԱԳՅԱՆ— Անասնապահության մթերատվության հետագա բարձրացման համար* . . . 24

Օգտագործիր զրույցի ժամանակ

*Բարգավաճում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությունը (թվեր և փաստեր)* . . . . . . . 32

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում

*Ալբանական ժողովուրդը սոցիալիզմ է կառուցում (թվեր և փաստեր)* . . . . . . . . 40

Տեղեկատու բաժին

*Նորվեգիա* . . . . . . . . . . . . . . 45



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*






# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ

### Դոցենտ՝ Ա. Գ. ԵՍԱՅԱՆ

*Մեր երկրի այժմ գործող Կոնստիտուցիան ընդունվել է 1936 թվականի դեկտեմբերի 5-ին, Սովետների Համամիութենական ութերորդ արտակարգ համագումարի կողմից։*

*ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան օրենսդրականորեն ձևակերպեց և ամրապնդեց այն հսկայական փոփոխությունները, որոնք տեղի էին ունեցել մեր հասարակության կյանքում 1924—1936 թվականների ընթացքում։ Նրանում օրենսդրական ձևակերպում ստացավ սոցիալիստական սիստեմի լիակատար հաղթանակը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում և արձանագրվեց մարդու կողմից մարդու շահագործումը իսպառ վերացնելու փաստը։*

*Սովետական Կոնստիտուցիան ռեալ իրականությունն արտացոլող փաստաթուղթ է, ՍՍՌՄ-ի հիմնական օրենքը։ Կոնստիտու-*

ցիան արձանագրում է, որ մեր Հայրենիքի տնտեսական հիմքն են կազմում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը, որին սովետական ժողովուրդը հասել է տնտեսության կապիտալիստական սիստեմի լիկվիդացման, արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման և մարդու կողմից մարդու շահագործումը ոչնչացնելու հետևանքով։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է,— ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 1-ին հոդվածում։ Կոնստիտուցիայի այս հոդվածը ելնում է այն բանից, որ սովետական հասարակությունը բաղկացած է երկու եղբայրական դասակարգերից՝ բանվոր դասակարգից և գյուղացիների դասակարգից, որոնք ունեն ընդհանուր շահ և միասնական նպատակ՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը։ Սովետական հասարակության բաղկացուցիչ մասն է կազմում նաև այդ երկու համերաշխ դասակարգերի ծոցից դուրս ելած սովետական ինտելիգենցիան։

ՍՍՌՄ 1936 թվականին ընդունված Կոնս-



տիտուցիան մի նոր, ավելի բարձր աստիճանի հասցրեց սովետական դեմոկրատիզմը։ Նա սովետական քաղաքացուն տվել է այնպիսի դեմոկրատական իրավունքներ ու ազատություններ, որպիսիք չեն տալիս և երբեք չեն տա բուրժուական երկրների կոնստիտուցիաները։ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի համաձայն սովետական յուրաքանչյուր քաղաքացի ունի աշխատանքի, հանգստի, նյութական ապահովության, կրթության իրավունք, խղճի, խոսքի, մամուլի ազատության, հասարակական կազմակերպություններում միավորվելու իրավունք և այլն։ Սովետական Կոնստիտուցիան չի սահմանափակվում քաղաքացիների իրավունքների և ազատությունների փաստի ձևական արձանագրմամբ, ինչպես այդ անում են բուրժուական կոնստիտուցիաները, այլ նա ծանրության կենտրոնը փոխադրում է այդ իրավունքներն ապահովելու հարցի վրա։ Նա օրենսդրական կարգով ստեղծում է ռեալ նյութական հնարավորություններ ազդարարված քաղաքացիական իրավունքներից ու ազատություններից օգտվելու համար։ Այդ մասին է խոսում փաստերով հարուստ մեր ռեալ իրականությունը։ Բավական է նշել, որ
թ ապահովումն սովետական քաղաքացիների

կոնստիտուցիոն իրավունքների, Սովետական
պետությունը 1955 թվականին, 1940 թվա-
կանի համեմատությամբ, ավելի քան երկու ու
կես անգամ ավելացրել է հատկացումները
սոցիալական-կուլտուրական կարիքների հա-
մար, ձրի ուսուցման և թոշակների, բժշկա-
կան ձրի սպասարկման և ուղեգրերի, ար-
ձակուրդների վճարման համար։

Սովետական Կոնստիտուցիայով տրված
դեմոկրատական մեծագույն իրավունքներն
ու ազատությունները սովետական քաղաքա-
ցին գործադրում է ազնիվ նպատակների հա-
մար՝ աշխատավորների շահերին համապա-
տասխան և սոցիալիստական կարգերն ամ-
րապնդելու նպատակով։ Սովետական քաղա-
քացին ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հովանու
ներքո պայքարում է խաղաղության համար՝
ընթանալով աշխարհի առաջադեմ մարդկու-
թյան առաջին շարքերում։

Համաժողովրդական այդ մեծ պայքարում
սովետական քաղաքացու դերը պայմանա-
վորված է այն, ինչպես դեմոկրատական,
քաղաքացիական իրավունքներով և ազա-
տություններով, որոնք ոսկյա տառերով գըր-
ված են ՍՍՌՄ Կոնստիտուցիայում և որոնք



ապահովված են Սովետական պետության
ամբողջ ուժով։

Բուրժուական երկրներում էլ կան կոնստի-
տուցիաներ, նրանցում էլ այս կամ այն չա-
փով ազդարարված են քաղաքացիների հա-
մար իրավունքներ և ազատություններ։ Սա-
կայն այդ իրավունքների ու ազատություն-
ների ազդարարումը ձևական է, քանի որ
բուրժուական պետությունը աշխատավորնե-
րի համար չի ապահովում և չի երաշխավո-
րում այդ իրավունքներից և ազատություն-
ներից օգտվելը։ Ավելին, մեր օրերում բուր-
ժուական պետություններն իրենք են անցել
հարձակման այն թեկուզ ձևական իրավունք-
ների ու ազատությունների դեմ, որոնք ար-
ձանագրված են բուրժուական կոնստիտու-
ցիաներում։ Իմպերիալիստական բուրժուա-
զիան մի կողմ է նետել դեմոկրատական ի-
րավունքների ու ազատությունների դրոշը։

Սովետական քաղաքացին իր կոնստիտու-
ցիոն մեծ իրավունքների և ազատություննե-
րի իրականացման պրոցեսում շրջապատված
է Կոմունիստական պարտիայի և Սովետա-
կան կառավարության ամենօրյա հոգատա-
րությամբ։ Սովետական քաղաքացու ազնիվ
ձգտումների և նրա կառավարության քաղա-
քականության միջև հակադրություններ չկան։

*Պարտիան և կառավարությունը գործում են սովետական ժողովրդի համար, իսկ ժողովուրդն էլ միահամուռ կերպով համախմբված է պարտիայի և Սովետական կառավարության շուրջը։*

*Սովետական Կոնստիտուցիան մեր հասարակության անպարտելի զենքն է՝ խաղաղության, դեմոկրատիայի և կոմունիզմի համար մղվող պայքարում։*

*ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի, կապիտալիստական ստրկությունից աշխատավորների ազատագրման, ՍՍՌՄ-ում ծավալուն, մինչև վերջը հետևողական դեմոկրատիայի հաղթության փաստերի օրենսդրական մարմնավորումն է։*

*1936 թվականի դեկտեմբերի 5-ին հաջորդած ժամանակաշրջանում ՍՍՌՄ Կոնստիտուցիան փոփոխություններ է կրել՝ կապված այն փոփոխությունների հետ, որոնք տեղի են ունեցել Սովետական պետության կյանքում՝ սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար մղվող պայքարի պրոցեսում։ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմի մեջ կամավոր սկզբունքով միավորված միութենական ռեսպուբլիկաների թիվը 11-ից դարձել*



*է 16։ Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Միության պատմական մեծ հաղթանակի հետևանքով նոր փոփոխություններ կատարվեցին մեր Կոնստիտուցիայում՝ կապված մեր Հայրենիքի տերիտորիալ իրավունքների վերականգնման հետ։*

*Սովետական Միության հետագա հզորացումը, ՍՍՌՄ-ի միջազգային կապերի ընդարձակումը, միութենական ռեսպուբլիկաների տնտեսական, կուլտուրական ու քաղաքական զարգացման մակարդակի բարձրացումը հնարավոր և անհրաժեշտ դարձրին միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդարձակումը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի տասներորդ սեսիան օրենք ընդունեց միութենական ռեսպուբլիկաներին արտաքին հարաբերությունների բնագավառում իրավունքներ տալու վերաբերյալ։*

*Անցած շրջանում է՛լ ավելի ամրակուռ է դարձել սովետական ժողովուրդների մեծ բարեկամությունը, որը ցեմենտված է կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղված համատեղ պայքարում նրանց թափած արյամբ ու քրտինքով։*

*Զինված ՍՍՌՄ Կոնստիտուցիայով, Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ սովետական ժողովուրդը մեծ եռանդով լծ-*

ված է սոցիալիստական արդյունաբերության և կոլտնտեսային գյուղատնտեսության հետագա զարգացման պլանների իրականացման գործին, որոնց հաջող կատարումը նոր բարձրության կհասցնի մեր հասարակության նյութա-կուլտուրական մակարդակը, է՛լ ավելի կբարձրացնի մեր սիրելի Սովետական Հայրենիքի տնտեսական և ռազմա-քաղաքական հզորությունը, որը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարի հաջողությունների ու հաղթանակների գլխավոր նախապայմանն է։

Խոսելով նոր կոնստիտուցիայի պատմական նշանակության մասին, Ի. Վ. Ստալինը ասել է. «Պայքարի և զրկանքների անցած ուղու իբրև արդյունք հաճելի և բերկրալի է ունենալ իր սեփական կոնստիտուցիան, որը խոսում է մեր հաղթանակների պտուղների մասին։ Հաճելի և բերկրալի է գիտենալ, թե ինչի համար են մարտնչել մեր մարդիկ և ինչպես են ձեռք բերել նրանք համաշխարհային պատմական հաղթությունը։ Հաճելի և բերկրալի է գիտենալ, որ մեր մարդկանց առատորեն թափած արյունը ապարդյուն չի անցել, որ այդ արյունն իր արդյունքներն է տվել»։

---

## ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ

Հարազատ Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարը արժանավայել կերպով են դիմավորում մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Սրբությամբ կատարելով պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները, ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառի աշխատողները նշանակալից հաջողությունների են հասել տարեկան արտադրական պլանները կատարելու, արտադրանքի որակը բարելավելու, ներքին ռեզերվներ հայտնաբերելու և այն ճիշտ օգտագործելու, արդյունաբերության հետագա վերելքն ապահովելու վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումը պատվով կատարելու գործում։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման 1955 թվականի 10 ամսվա պլանը կատարված է 105,1 տոկոսով։

Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ այս տարի մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 14 տոկոսով։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասը ժամկետից շուտ կատարելով հինգերորդ հնգամյա պլանը, այժմ աշխատում են 1956 թվականի հաշվին։

Մտնելով պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցմրցության մեջ, աշխատանքային խոշոր հաջողություններ է ձեռք բերել Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը։ Գործարանը այս տարվա 10 ամսվա պլանը կատարել է 103,9 տոկոսով, տնտեսել է մեծ քանակությամբ հիմնական նյութ և թողարկել է գերազանցապես բարձրորակ արտադրանք։ Գործարանի 1—8 ցեխի կոլեկտիվը պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված մրցության մեջ մտնելուց հետո սիստեմատիկաբար գերակատարում է պլանները։ Օրինակ, ցեխը վերջին երկու ամսվա պլանը կատարեց 105 տոկոսով և միաժամանակ խնայեց 52 տոննա հիմնական հումք։ Այդ նույն ժամանակամիջոցում արտադրության մեջ ներդրվել է ռացիոնալիզատորական 20 ա-



ռաջարկություն, որը տասնյակ հազար ռուբլու օգուտ է բերում գործարանին։

Ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով է կատարում Երևանի Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը։ Գործարանը ժամկետից 4 ամիս շուտ կատարեց հինգերորդ հնգամյա պլանը։ Այստեղ 10 ամսում ավելի շատ արտադրանք է թողարկվել, քան այն թողարկվում էր ամբողջ 1954 թվականի ընթացքում։

Ի պատիվ ՍՄԿՊ 20-րդ համագումարի, սոցիալիստական մրցությունը բուռն թափով ծավալվում է Լենինականի արդյունաբերական ձեռնարկություններում։ Քաղաքի ձեռնարկությունները գերակատարել են այս տարվա 10 ամսվա պլանները և պլանից դուրս երկրին տվել են մի քանի միլիոն ռուբլու արտադրանք՝ գործվածքեղեն, տրիկոտաժեղեն, գուլպա, հագուստեղեն, կոշկեղեն, մանվածք, պահածո և այլն։ Մրցությամբ ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով են կատարում Վ. Մ. Մոլոտովի անվան մանարան ֆաբրիկայի, Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի և շատ ուրիշ ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Մանարան ֆաբրիկան 10 ամսվա պլանները կատարել է

103,9 տոկոսով և պլանից դուրս երկրին տըրվել է մեկ միլիոն 500 հազար ռուբլու արժողությամբ մանվածք։ Ֆաբրիկայում տնտեսվել է 22 տոննա բամբակ։ Այստեղ 242 բանվորներ արդեն կատարել են տարեկան պլանը։ Էլ ավելի լուրջ հաջողությունների է հասել Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կոլեկտիվը։ Կոմբինատը ժամկետից շուտ կատարելով 10 ամսվա արտադրական պլանը, միաժամանակ պլանից դուրս երկրին տվել է 190 տոննա մանվածք։ Այդ նույն ժամանակաշրջանում տընտեսված է 80 տոննա բամբակ և 56 տոննա մանվածք։ Մրցության մասնակիցներից 2.200 հոգի արդեն կատարել են տարեկան պլանները։ Կոմբինատում այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացել է 47 տոկոսով։

Պարտիայի 20-րդ համագումարը նշանակալից հաջողություններով են դիմավորում նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները։ Բազմաթիվ կոլտընտեսություններ և սովխոզներ բարելավելով ցանքերի մշակությունը, նվաճել են բարձր բերք, և այժմ նրանց աշխատանքի փորձը լայնորեն ցուցադրվում է ռեսպուբլիկայի և նույնիսկ Համամիութենական գյուղատըն-



տեսական ցուցահանդեսում։ Ռեսպուբլիկայի 866 կոլտնտեսություններից 172-ը դարձել են միլիոնատեր։ Էջմիածնի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսության կոլտնտեսականները բամբակի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացել են ավելի քան 43 ցենտներ բերք, նախատեսված 26 ցենտների փոխարեն։ Շահումյանի շրջանի Կալինինի անվան կոլտնտեսությունը այս տարի յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 3.572 կիլոգրամ կաթ։ Միայն անասնաբուծությունից կոլտնտեսության եկամուտը կազմում է ավելի քան 654 հազար ռուբլի։ Այստեղ յուրաքանչյուր հարյուր հեկտար հողային տարածության դիմաց ստացվել է 473 ցենտներ կաթ և 47 ցենտներ միս։

Գյուղատնտեսական տարին աչքի ընկնող հաջողություններով են փակում ռեսպուբլիկայի սովխոզները։ Ստեփանավանի շրջանի Լոռվա տոհմային սովխոզի 2-րդ ֆերմայում յուրաքանչյուր կովից ստացվել է 4.000-ից մինչև 5.000 և որոշ կովերից նույնիսկ 7.000 կիլոգրամ կաթ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները լուրջ հաջողություններ ունեն եգիպտացորենի մշակության ասպարեզում։ Շատ կոլտնտեսություններ եգիպտացորենի

ցանքերից առատ բերք են հավաքել։ Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Մարգարա գյուղի կոլտնտեսությունը եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 60 ցենտներ կողր, իսկ Ստեփանավանի Կուրթան գյուղի կոլտնտեսությունը՝ 70 ցենտներ։ Շատ կոլտնտեսություններ եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից ստացել են 200-ից մինչև 470 և ավելի ցենտներ կանաչ մասսայի բերք։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում գյուղատնտեսական աշխատանքները մեքենայացնելու ուղղությամբ։

Պարտիայի 20-րդ համագումարի պատվին կազմակերպված սոցմրցությունը օրեցօր ծավալվում է ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, մեքենա-տրակտորային կայաններում և սովխոզներում։ Աշխատանքի բազմաթիվ առաջավորներ բարձր ցուցանիշներով են կատարում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Սակայն այդ հաջողությունները չպետք է հանգստացնեն մեզ։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ մեր ագիտատորները պետք է ուժեղացնեն աշխատավորների մեջ կա-



տարվող մասսայական-բացատրական աշխատանքը, հանգամանորեն պարզաբանեն նրանց այն հսկայական միջոցառումները, որ պարտիան ու կառավարությունը ձեռնարկել են արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացումն ապահովելու համար։ Ագիտատորի գովելի աշխատանքը կլինի այն, որ նա սիստեմատիկաբար օգնի ունկնդիրներին ստանձնած պարտավորությունները ժամանակին կատարելու գործում։ Հասնի այն բանին, որ մրցության բոլոր մասնակիցները կատարեն իրենց խոստումը։ Քիչ չեն այն փաստերը, որ նույն պայմաններում աշխատող մրցության մասնակիցները տալիս են տարբեր արդյունքներ։ Աշխատանքի շատ առաջավորներ կրկնակի և նույնիսկ եռակի անգամ գերակատարում են սահմանված նորմաները։ Առաջավոր մարդկանց աշխատանքի այդ դրական փորձը, մեր ագիտատորների ուժերով, պետք է դառնա բոլորի սեփականությունը, այն պետք է կրի մասսայական բնույթ։

Ավելի լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը և պարտիայի 20-րդ համագումարը նշանավորենք նոր հաջողություններով։

# ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԻ ԴՊՐՈՑԸ

Վ. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական ցուցահանդեսի դիրեկտոր

*Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական ցուցահանդեսը առաջավոր փորձի պրոպագանդայի մի գործնական դպրոց է, որը արտացոլում է առաջավոր կոլտնտեսությունների, սովխոզների, ՄՏ կայանների և գիտահետազոտական հաստատությունների հաջողությունները։*

*Ցուցահանդեսը զբաղեցնում է 30 հեկտար տարածություն, որտեղ գլխավոր պավիլիոնից բացի կառուցված են անասնագոմեր, թռչնանոցներ, հիմնադրված է խաղողի կոլեկցիոն այգի, ուր աճեցվում են խաղողի 32 լավագույն սորտեր։ Բացի այդ, հիմնված է նաև բազմաթիվ սորտերից կազմված դեղձի, ծիրանի ու խնձորի այգի։ Այստեղ ցուցադրվելու է նրանց տնկման և մեքենայական մշակության եղանակը։*

*Անասնաբուծության, ծխախոտագործու-*



*թյան, բամբակագործության, խաղողագործության, պտղաբուծության, հացահատիկային և բանջարա-բոստանային կուլտուրաների բնագավառում ձեռք բերված նվաճումների համար լայն ցուցադրման են ներկայացված 3 սովխոզ, 15 կոլտնտեսություն, 18 բրիգադա, 13 օղակ, 1 ՄՏ կայան, գյուղական 1 էլեկտրակայան և գիտահետազոտական 8 հիմնարկ։*

*Ներածական սրահում ցուցադրված են ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, էլեկտրիֆիկացիայի, ոռոգման, ինչպես նաև գիտության, կուլտուրայի և առողջապահության ասպարեզում ձեռք բերված նվաճումները։*

*Ներածական սրահից այցելուները մտնում են էլեկտրիֆիկացիայի և մեխանիզացիայի սրահը։ Այս սրահում ցուցադրված է գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքենայացման աճը։ Այս սրահի ստենդներում եղած տվյալները ասում են այն մասին, որ 1940 թվականի համեմատությամբ զգալի չափով ավելացել է ՄՏ կայանների թիվը և նրանց պարկի հագեցվածությունը նորագույն մեքենաներով։ Դրա շնորհիվ կոլտնտեսություններում վարի 95, ցանքի 57 և բերքահավաքի 55 տոկոսը կատար-*

վում է մեքենաների միջոցով։ Խոշոր չափով ավելացել է գյուղական էլեկտրակայանների թիվը։ 1940 թվականին եղած 6 էլեկտրակայանների փոխարեն այժմ կոլտնտեսությունները ունեն 25-ը։ Անընդհատ աճում է նաև էլեկտրիֆիկացված կոլտնտեսությունների թիվը։ Եթե 1940 թվականին ռեսպուբլիկայում կային էլեկտրիֆիկացված 158 կոլտնտեսություն, ապա անցյալ տարի նրանց թիվը հասավ 624-ի։

Այստեղ լայնորեն ցուցադրված են Հոկտեմբերյանի հենակետային ցուցադրական ՄՏ կայանի և նրա լավագույն մեխանիզատորների նվաճումները։ 1954 թվականին ՄՏ կայանի սպասարկած վեց կոլտնտեսությունները վարելահողի, մարգագետինների և արոտավայրերի յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց միջին հաշվով ստացել են 218 ցենտներ հացահատիկ, 234 ցենտներ բանջարեղեն, 689 ցենտներ բամբակ, 119 ցենտներ կաթ։

Նույն գոտու կոլտնտեսությունները հեկտարից հավաքել են 25,4 ցենտներ բամբակ, 97,5 ցենտներ խաղող, 85,8 ցենտներ խոտ և այլն։

Անասնաբուծության դահլիճում իրենց լուրջ հաջողություններով աչքի են ընկնում



Շահումյանի շրջանի Կալինինի անվան, Բասարգեչարի շրջանի Մոլոտովի անվան, Ստեփանավանի շրջանի Կագանովիչի անվան, Մեղրու շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունները և Լոռու տոհմային սովխոզը։

Բասարգեչարի շրջանի Մոլոտովի անվան կոլտնտեսությունը զգալիորեն ավելացրել է ոչխարների բրդատվությունը և լավացրել բրդի որակը։ 1954 թվականին միջին հաշվով մեկ ոչխարից կոլտնտեսությունն ստացել է 3,1 կգ. բուրդ, այդ բանին կոլտնտեսությունը հասել է տեղական ոչխարները նրբագեղմ խոյերի հետ տրամախաչելու միջոցով։ 1940 թվականի համեմատությամբ այստեղ բրդի արտադրությունն ավելացել է մոտ երեք անգամ։ Կոլտնտեսությունն անցած տարի յուրաքանչյուր աշխօրի դիմաց բաշխեց 15 ռուբ. դրամ, 1,5 կգ. հացահատիկ, 200 դրամ յուղ, պանիր և այլ մթերքներ։

Մեղրու շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը մեծ հաջողության է հասել շերամապահությունը զարգացնելու ասպարեզում։ Կոլտնտեսությունը 1955 թվականին կերակրել է 192 տուփ գրենա և յուրաքանչյուր տուփից ստացել 86,2 կգ. բոժոժ։ Օղակավարուհի Ա. Գաբրիելյանը կերակրել է 4

տուփ գրենա և յուրաքանչյուրից ստացել է 92 կգ. բոժոժ։

Այս դահլիճում այցելուները ծանոթանում են անասնաբուծության բոլոր ճյուղերի զարգացման հետ։ Արժե նշել, որ կոլտնտեսություններում և սովխոզներում վերջին տարիների ընթացքում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 34,4 տոկոսով, ըստ որում կովերինը՝ 112,7 տոկոսով, իսկ կաթի համախառն արտադրանքը աճել է 176,7 տոկոսով։

Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացմանը և մթերատվության բարձրացմանը զուգընթաց, զգալիորեն աճել է նաև ոչխարների գլխաքանակը, 1940 թվականի համեմատությամբ, 1954 թվականին աճը կազմում է 116 տոկոս։

Բուսաբուծության սրահը ամենաընդարձակն է։ Այստեղ յուրաքանչյուր կուլտուրայի մշակությանը և առաջավոր կոլտնտեսություններին հատկացված է առանձին ստենդ։ Լայնորեն ցուցադրված են ծխախոտի, բամբակի, շաքարի ճակնդեղի, հացահատիկային, բանջարա-բոստանային և ուրիշ կուլտուրաների մշակության գործում ձեռք բերված հաջողությունները։ Այդ նույն սրահում իրենց ստենդներն ունեն Հայկական ՍՍՌ



Գյուղատնտեսության մինիստրության տեխնիկական կուլտուրաների ինստիտուտը, Լենինականի սելեկցիոն կայանը և Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի գիտահետազոտական հիմնարկները։

Բամբակագործությունը գյուղատնտեսության կարևոր ճյուղերից մեկն է։ Ռեսպուբլիկայում այդ կուլտուրան մշակում են 104 կոլտնտեսություն։ Դիագրամաներով ցույց է տրված ինչպես ցանքատարածությունների, այնպես էլ բերքատվության աճը։ Բամբակագործական կոլտնտեսություններից այս սրահում լայնորեն ցուցադրված է Հոկտեմբերյանի շրջանի Լենինի անվան կոլտնտեսությունը, որը տարեցտարի բարձրացնում է այդ կուլտուրայի բերքատվությունը։ 1954 թվականին կոլտնտեսությունը իր մշակած 456 հեկտար բամբակի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 29 ցենտներ բերք։ Այստեղ շատ բամբակագործներ հիանալի ցուցանիշների են հասել։ Այսպես, օրինակ, անվանի բրիգադիր Վ. Հակոբյանը, որի պորտրեն ցուցադրված է կոլտնտեսության ստենդում, 1954 թվականին 63 հեկտար տարածության ամեն մի հեկտարից ստացել է 32,6 ցենտներ բերք։ Բրիգադիր Ջ. Սարգսյանը 54

հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 30,9 ցենտներ բերք։

Կարտոֆիլի բարձր բերք ստանալու համար առանձին ստենդում ցուցադրված է Կարմիրի շրջանի Օրջոնիկիձեի անվան կոլտնտեսությունը, որը 1954 թվականին 224 հեկտար կարտոֆիլի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 154,4 ցենտներ բերք և աշխօրին բաշխել է 10,6 կգ կարտոֆիլ։ Այդ նույն կոլտնտեսության բրիգադիր Հ. Թորոսյանը 58,5 հեկտար կարտոֆիլի ցանքատարածության ամեն մի հեկտարից ստացել է 161,5 ցենտներ բերք։

Առանձին սրահում ցուցադրված են մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ձեռք բերած հաջողությունները խաղողագործության և պտղաբուծության բնագավառում։ Պավիլիոնում կան խաղողի և պտուղների բազմաթիվ էքսպոնատներ։ Այս սրահում ցուցադրված են նաև այգեգործության և գինեգործության ինստիտուտի կողմից աճեցրած խաղողի և պատրաստած գինիների նոր տեսակները։ Լայնորեն ցուցադրված են Արտաշատի շրջանի «Փարիզյան կոմունա», Մեղրու շրջանի Ստալինի անվան, Շահումյանի շրջանի Մոլոտովի անվան կոլտնտեսությունները և Ալավերդու շրջանի «Նոր



Խանչպար» կոլտնտեսության բրիգադան, որոնք խաղողի և պտուղների գծով ստացել են բարձր բերք։

Ցուցահանդեսի եզրափակիչ դահլիճը նվիրված է գյուղատնտեսության մթերքները մշակող ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությանը։ Այստեղ իրենց ստենդներն ունեն պահածոների գործարանը, «Արարատ» տրեստը, Շամպայն գինիների կոմբինատը, Կիրովի անվան սովխոզը և այլն։

Բազմաթիվ են այն հաջողությունները, որոնք ձեռք են բերել մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորները։ Մեծ է առաջավոր փորձի ուժը։ Այցելուները ուշիուշով ուսումնասիրելով ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի լավագույն փորձը և վերադառնալով իրենց կոլտնտեսությունները, ՄՏԿ-ները և սովխոզները, ամեն ջանք գործ կդնեն այն արմատավորելու իրենց մոտ։

Ցուցահանդեսի բացումից մինչև նոյեմբերի 10-ը արդեն այցելել են 11 հազար հոգի։ Նրանք մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում էին գլխավոր պավիլիոնի բոլոր սրահները և վառ տպավորություններով հեռանում ցուցահանդեսից։

# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Գորիսի շրջանի Բռուն գյուղի կոլտնտե-
սության կովաբուծական ֆերմայի ագիտա-
տոր ԳԱՌՆԻԿ ԱՎԱԳՅԱՆԻ զրույցը անասնա-
պահների հետ:

Ագիտացիոն աշխատանքի ուսանելի փորձ
ունի ագիտատոր Գ. Ավագյանը։ Ունկնդիր-
ները միշտ էլ սիրով են լսում նրան և ակտի-
վորեն մասնակցում զրույցին։

Վերջերս նա իր ունկնդիրների հետ զրույց
ունեցավ անասնաբուծության մթերատվու-
թյան բարձրացման մասին։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվար-
յան պլենումը,— ասաց ագիտատորը,— պա-
հանջեց հասնել անասնաբուծության զար-
գացման այնպիսի մակարդակի, որը հնա-
րավորություն տա ապահովելու սննդա-
մթերքների ասպարեզում բնակչության և
հումքի ասպարեզում արդյունաբերության
աճող պահանջմունքները։

Մեր կոլտնտեսությունն ունի բոլոր պայ-



մանները Կոմունիստական պարտիայի այդ
պահանջը լիովին կենսագործելու համար։
Մեր գյուղն ունի հարուստ խոտհարքներ և
արոտներ։ Այստեղ հնարավոր է անասուննե-
րին արածացնել մինչև մսուրային շրջանի
սկսվելը։ Խելացի կերպով օգտագործելով
գյուղի բնական նպաստավոր պայմանները և
սովետական առաջավոր զոոտեխնիկայի նը-
վաճումները, մենք ընթացիկ տարում բարձր
ցուցանիշների հասանք անասնաբուծության
զարգացման գործում։ Կոլտնտեսությունը գե-
րակատարել է խոշոր եղջերավոր անասուն-
ների, այդ թվում նաև կովերի գլխաքանակի
աճման այս տարվա պլանը։ Հաջողություն-
ները մեծ են նաև խոզաբուծության, ոչխա-
րաբուծության և թռչնաբուծության զարգաց-
ման ուղղությամբ։ Կոլտնտեսությունը դեռ
մայիս ամսին կատարել է պետությանը ա-
նասնապահական մթերքներ հանձնելու
պլանները։

Ավելի մեծ են մեր հաջողությունները կո-
վերի կաթնատվության բարձրացման բնա-
գավառում։ Կոլտնտեսությունը պլանով նա-
խատեսված 1100 կիլոգրամի փոխարեն յու-
րաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է
1600 կիլոգրամ կաթ։ Կոլտնտեսությունն
արդեն կատարել է կովերի կաթնատվության

բարձրացման 1959 թվականի պլանը։ Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի 70 հազար կիլոգրամ շատ կաթ է ստացվել։

Այնուհետև ագիտատորը խրախուսում է այն կոլտնտեսականներին, որոնք բարձր ցուցանիշների են հասել կովերի կաթնատվությունը բարձրացնելու գործում։

Սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները,— ասում է ագիտատորը,— հիանալի կատարեց կթվորուհի Ն. Հայրապետյանը, որն իր խնամած 10 կովից ստացել է նույնքան առողջ հորթեր և ամեն մի կովից պլանով նախատեսված 1100 կիլոգրամի դիմաց կթել է 1910 կիլոգրամ կաթ։ Ա. Մաշուրյանն իր խնամքին հանձնված ամեն մի կովից ստացել է 2.100 կիլոգրամ կաթ։ Բարձր կաթնատվության են հասել նաև կթվորուհիներ Օ. Վանեսյանը, Թ. Ամարյանը, Վ. Մաշուրյանը, Մ. Ղուկասյանը, Փ. Բալոյանը, Ա. Օհանյանը, Վ. Ադամյանը և շատ ուրիշներ։ Շատ անասնապահներ բարձր կաթնատվության համար ստանում են մեծ քանակությամբ լրացուցիչ վարձատրություն։

Սակայն ամենակարևորն այն է,— շարունակում է իր զրույցը ագիտատորը,— որ այդ ցուցանիշները վերջնական չեն համարվում։ Մեր կոլտնտեսությունն ունի ներքին շատ



ռեզերվներ, որոնց խնլացի օգտագործումով կարելի է շատ ավելի բարձր արդյունքների հասնել։ Ի՞նչ ռեզերվներ են դրանք։ Անասունների մթերատվության հետագա բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի անասունների ցեղի բարելավումը։ Այդ աշխատանքները մենք սկսել ենք դեռ 1937 թվականից։ Մենք կովերի տեղական ցեղը տարեցտարի բարելավում ենք։ Այժմ մեր կոլտնտեսությունն ունի իր ցեղական արտադրողները և ցեղական կովերի լավ կազմ, որոնք ստացվել են տեղական և «Շվից» ցեղերի տրամախաչումից։ «Շվից» ցեղի կովերը լավ են հարմարվում տեղական պայմաններին և ավելի շատ կաթ են տալիս։

Հանրային անասնաբուծության վերելքի համար կարևոր նշանակություն ունի հացահատիկի արտադրության ավելացումը։ Մեր կոլտնտեսությունն այս տարի զգալիորեն ավելացրեց հացահատիկի, սիլոսի, արմատապտուղների, կարտոֆիլի և այլ կերերի արտադրությունը։ Այս տարի, 1953 թվականի համեմատությամբ, խտացրած կերի արտադրությունն ավելացվել է մինչև 5 անգամ, սիլոսինը՝ 6 անգամ, արմատապտուղներինը՝ 4 անգամ, կարտոֆիլինը՝ 5 անգամ, կոշտ կերերինը՝ մոտ 2 անգամ։ Ինչպես փորձը

ցույց է տալիս, անասունների մթերատվության բարձրացման գործում եգիպտացորենը իրեն հավասարը չունի։ Այս տարի կոլտնտեսությունը առաջին անգամ ցանել է եգիպտացորեն։ Ցանքերը բարձր ագրոտեխնիկայով մշակելու շնորհիվ ամեն մի հեկտարից ըստացվել է 200—250 ցենտներ կանաչ մասսա։ Սակայն եգիպտացորենի այդ ցանքերը դեռ քիչ են։ Ագիտատորի զրույցի այս մասը ավելի է աշխուժացնում ունկնդիրներին. նրրանք հարցեր են տալիս ագիտատորին այն մասին, թե ինչ է արվելու առաջիկայում անասունները բազմազան և հյութալի կերերով լի ու լի ապահովելու գործում։ Օրինակ, եկող տարի ինչքան են ընդարձակվելու եգիպտացորենի, կերի կարտոֆիլի ու ճակնդեղի, կաղամբի և խոտաբույսերի ցանքերը։ Գոհացուցիչ պատասխան տալով ունկնդիրներին, ագիտատորը շարունակում է իր զրույցը։

Մեր կոլտնտեսությունը,— ասում է նա,— ունի նաև հսկայական տարածությամբ բնական խոտհարքներ։ Մեր խնդիրն է առավելագույն չափով օգտագործել բնական կերային այդ հրաշալի հարստությունը։ Զրույցի այս մասում ագիտատորը խոսում է արոտավայրերը ճիշտ և արդյունավետ օգտագոր-



ծելու առաջավորների փորձի մասին և քննադատում այն թերությունները, որ այս տարի եղել են անասունների արոտը կազմակերպելու գործում։ Անասնապահներն իրենց հերթին նշում են ընթացիկ տարում արոտավայրերի օգտագործման բնագավառում մի շարք թերություններ և խոստանում գալիք տարվա յայլաղային շրջանում իսպառ վերացնել այդ թերությունները։

Այնուհետև ագիտատորը խոսում է մսուրային շրջանում անասուններին ռացիոնալ կերպով կերակրելու մասին, որն այժմ խիստ կարևոր հարց է անասնապահների համար։ Այդ կապակցությամբ նա պատմում է առաջավորների փորձի մասին, թե ինչպես նրանք հաշվի առնելով կովերի կենդանի քաշը և մթերատվությունը, ձմռան ամիսներին կազմում են կերաբաժիններ, որոնց մեջ մտցընում են տարբեր տեսակի կերեր. նրանք ժամանակին կերակրում և խնամում են կովերին և մատղաշներին։

Խոսելով անասունները բարեկարգ գոմերով ապահովելու մասին, ագիտատորը նշում է, որ այդ ուղղությամբ կոլտնտեսությունում որոշ աշխատանք կատարված է։ Ամեն տարի,— ասում է նա,— կառուցում ենք նոր տիպային գոմեր, սիլոսային հորեր և աշտա-

*րակներ։ Սակայն մեր ոչ բոլոր անասուններն են տեղավորված տիպային գոմերում, իսկ դա զգալիորեն ազդում է անասունների մթերատվության բարձրացման վրա։ Այդ մեծ թերություն է։ Կոլտնտեսության հնգամյա պլանով՝ մինչև 1960 թվականը պետք է կառուցվեն այնքան տիպային անասնապահական շենքեր, որոնք բավարարեն անասնաբուծության զարգացման պահանջները։ Միաժամանակ աշխատանք է կատարվում անասնապահական շատ աշխատատար պրոցեսներ մեքենայացնելու և ավտոմատացնելու ուղղությամբ։ Առաջիկայում էլեկտրիֆիկացվելու է կովերի կիթը, ոչխարների խուզը, ջրամատակարարումը, կերերի նախապատրաստումը, սիլոս պատրաստելու աշխատանքները և այլն։*

*Զրույցի վերջում ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը բևեռում է մսուրային շրջանը հաջող անցկացնելու վրա։*

*Անասնաբուծության հետագա զարգացումը,— ասում է ագիտատորը,— մեծ չափով կախված է մսուրային շրջանն օրինակելիորեն կազմակերպելուց։ Կոլտնտեսությունն այս տարի կուտակել է մեծ քանակությամբ անասնակեր, առանձնացրել է 20 տոննա գարի, մոտ 14 տոննա քուսպ և այլ կերեր։ Ար-*



*դեն վերանորոգվել են բոլոր գոմերը։ Անասնաբուծության մթերատվության հետագա բարձրացման ուղղությամբ մեր կոլտնտեսականները կանեն ամեն բան, որպեսզի պատվով կատարեն պարտիայի և կառավարության կողմից մեր կոլտնտեսության առջև դրված խնդիրները,— ավարտում է իր զրույցը ագիտատորը։*

# ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

## (Թվեր և փաստեր)

★ *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանը արդյունաբերական արտադրության ծավալի գծով կատարված է չորս տարի և 4 ամսում։ Արդյունաբերական արտադրության մակարդակը 1955 թվականին կկազմի 1950 թվականի համեմատությամբ 184 տոկոս և 1940 թվականի համեմատությամբ՝ 318 տոկոս։ Արտադրության միջոցների արտադրությունը 1950 թվականի համեմատությամբ՝ 189 տոկոս և սպառման առարկաների արտադրությունը՝ 176 տոկոս։*

★ *1955 թվականին արտադրվելու է 70 միլիոն տոննա նավթ, ավելի քան 390 միլիոն տոննա ածուխ, ձուլվելու է ավելի քան 33 միլիոն տոննա չուգուն և մոտ 45 միլիոն տոննա պողպատ։ Այն, ինչ 1920 թվականին արտադրվում էր մեկ տարում, 1955 թվակա-*



*նին արտադրվում է՝ էլեկտրաէներգիա մեկ օրում, չուգուն՝ 1,5 օրում, ածուխ՝ 8 օրում, նավթ՝ 20 օրում, շաքար՝ 7 օրում։*

★ *Նախասովետական Ռուսաստանը էլեկտրաէներգիայի արտադրության գծով գրավում էր վերջին տեղերից մեկը։ Այժմ ՍՍՌՄ-ը գրավում է աշխարհում 2-րդ տեղը։ Սովետական իշխանության տարիներին կառուցվել և գործարկվել է մեծ ու միջին կարողության ավելի քան 300 էլեկտրակայան, այդ թվում՝ 90 հիդրոէլեկտրակայան։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1955 թվականին կկազմի 166 միլիարդ կիլովատ-ժամ, որը 87 անգամ ավելի է, քան 1913 թվականին։ Միայն Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը կարտադրի 11,4 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը 6 անգամ ավելի է, քան արտադրվում էր ամբողջ նախառևոլյուցիոն Ռուսաստանում 1913 թվականին։*

✪ *Միայն անցյալ տարի ավելի շատ կապիտալ շինարարական աշխատանք է կատարվել, քան ամբողջ երկրորդ հնգամյակի ընթացքում։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում մեր երկրում վերականգնվել, կառուցվել և գործարկվել են ավելի քան 8 հազար արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ։*

★ Կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի ինդեքսը 1929 թվականի մակարդակի համեմատությամբ, որն ընդունված է որպես 100, 1954 թվականին կազմեց 176։ Իսկ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ինդեքսը 1929 թվականի համեմատությամբ, 1954 թվականին կազմեց 1.785, այսինքն՝ ավելացավ գրեթե 18 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի աճի միջին տարեկան տեմպերը Սովետական Միությունում այդ տարիներին ավելի քան 5 անգամ բարձր են եղել կապիտալիստական աշխարհի համապատասխան ժամանակաշրջանի տարեկան միջին աճի տեմպերից։ Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալով մեր երկիրը աշխարհում գրավում է երկրորդ տեղը։

★ Մեր երկաթուղային, ծովային, գետային և ավտոմոբիլային տրանսպորտը հինգերորդ հնգամյակի տարիներին վգալիորեն աճել է և կատարում է պլանները։ Երկաթուղային տրանսպորտի 1955 թվականի բեռնաշրջանառությունը 60 տոկոսով գերազանցում է 1950 թվականի բեռնաշրջանառության մակարդակը։

★ Սովետական Միության երկաթուղայինները 1955 թվականի առաջին կիսամյա-



կին տեղափոխել են 1 միլիոն 227 հազար ծանրաքարշ գնացք։ Դա 402 հազար գնացքով ավելի է, քան եղել է անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում։ Այդ ծանրաքարշ գնացքներով պլանից դուրս, լրացուցիչ տեղափոխված է 400 միլիոն տոննա բեռ։

★ ՍՍՌՄ-ում աշխատանքի արտադրողականությունը 1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է երկու անգամ և 1950 թվականի համեմատությամբ՝ 44 տոկոսով։

✪ 1954 թվականի հունիսի 30-ից մինչև 1955 թվականի հունիսի 30-ը ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվն աճել է ավելի քան մեկ միլիոն մարդով։ Ավելացել է արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի աշխատողների քանակը և կրճատվել սովետական հիմնարկների ու ձեռնարկությունների վարչական ապարատի աշխատողների թիվը։

✪ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ կոլտնտեսությունները ղեկավար աշխատանքի են տեղափոխվել տասնյակ հազար պարտիական, սովետական, տնտեսական, ինժեներա-տեխնի-

կական աշխատողներ, բանվորներ և ծառայողներ։

✪ Երկրի կոլտնտեսությունները, ՄՏԿ-ները և սովխոզները այս տարի 21 միլիոն հեկտարով շատ գարնանացան են կատարել, քան անցյալ տարի, այդ թվում 11 միլիոն հեկտարը եղել է ցորեն։

★ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշմամբ եգիպտացորենի ցանքատարածությունը 1960 թվականին պետք է հասցվի ավելի քան 28 միլիոն հեկտարի։ Ընթացիկ տարվա գարնանը ցանվել է 17,9 միլիոն հեկտար եգիպտացորեն՝ անցյալ տարվա 4,3 միլիոն հեկտարի փոխարեն։

★ Հաջողությամբ են իրականացվում խամ ու խոպան հողերի յուրացման մասին պարտիայի ու կառավարության որոշումները։ Անցյալ տարի ցանվել էին 3,6 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր, իսկ այս տարի արդեն ցանվել է 19,7 միլիոն հեկտար՝ պլանով նախատեսված 13 միլիոն հեկտարի փոխարեն։ 1950 թվականի համեմատությամբ՝ ՍՍՌՄ-ում ցանքատարածությունն աճել է 27 տոկոսով, այդ թվում յուրացված է ավելի քան 30 միլիոն հեկտար խոպան հող։

★ Խամ և խոպան հողերի շրջաններում



կազմակերպված է 424 սովխոզ, որից 124-ը անցյալ տարի, իսկ 300-ը՝ ընթացիկ տարում։ Միայն Կրասնոյարսկի երկրամասում կազմակերպված «Տյուպսկի» սովխոզը այս տարի երկրին տալու է 3,5 միլիոն փութ հացահատիկ։

★ 1955 թվականի առաջին կիսամյակում գյուղատնտեսությունը ստացել է 75 հազար ընդհանուր գործածության տրակտոր (15 ուժանոցի վերածած), 31,5 հազար շարահերկ մշակության տրակտոր, 58 հազար բեռնատար ավտոմեքենա, 21 հազար հացահատիկային կոմբայն, 9 հազար կարտոֆիլ հավաքող կոմբայն, 3 հազար շաքարի ճակնդեղ հավաքող կոմբայն, 48 հազար տրակտորային գութան, 59 հազար տրակտորային շարքացան, 48 հազար տրակտորային կուլտիվատոր, 12 հազար կարտոֆիլ տնկող մեքենա և շատ մեքենաներ ու սարքավորումներ անասնաբուծական ֆերմաների համար։

★ 1955 թվականի հուլիսի 1-ի դրությամբ՝ գյուղատնտեսության մեջ աշխատում էր մեկ միլիոն 400 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և 350 հազար հացահատիկային կոմբայն։

★ Զգալի չափով ավելացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։

*1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հուլիսի 1-ը կոլտնտեսություններում 28 տոկոսով ավելի կաթ է կթված, քան 1953—1954 թվականին և 52 տոկոսով ավելի, քան 1952—1953 թվականի նույն ժամանակաշրջանում։*

*★ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ հոգատարություն են ցուցաբերել ժողովրդի նյութական, կուլտուրական պահանջմունքների բավարարման նկատմամբ։ Արդյունաբերության մեջ բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 39 տոկոսով, 1940 թվականի համեմատությամբ՝ 91 տոկոսով, իսկ գյուղացիների եկամուտները (մեկ աշխատողի հաշվով) 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել են 30 տոկոսով և 1940 թվականի համեմատությամբ՝ 122 տոկոսով։*

*★ 1940 թվականի համեմատությամբ ավելի քան երեք ու կես անգամ ավելացել են պետության հատկացումները ժողովրդի սոցիալ-կուլտուրական կարիքները բավարարելու համար։ Գների սիստեմատիկ իջեցումը, աշխատավորների ռեալ աշխատավարձի ավելացումը օգնեցին նրանց գնողունակու-*



*թյան աճին։ Այդ փաստի փայլուն ապացույցն է այն, որ հնգամյա պլանը մանրածախ ապրանքաշրջանառության գծով կատարվեց 4 տարում։*

*★ Հնգամյակի տարիներին երկրում կառուցվել և շահագործման է հանձնվել 150 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Հետպատերազմյան 9 տարիների ընթացքում քաղաքներում կառուցվել է 200 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ գյուղերում կառուցվել է 4,5 միլիոն բնակարան։ Այսպիսով, յուրաքանչյուր մեկ րոպեում սովետական գյուղում կառուցվում է մեկ նոր տուն։*

---

# ԱԼԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՍՈՑԻԱԼԻԶՄ Է ԿԱՌՈՒՑՈՒՄ

## Թվեր և փաստեր

*Նոյեմբերի 29-ին Ալբանիայի աշխատավորները հանդիսավոր կերպով նշում են օտարերկրյա հարստահարիչների լծից երկրի լիակատար ազատագրման տասնմեկերորդ տարեդարձը։ Օգտագործելով սովետական զենքի հաղթանակների շնորհիվ Բալկաններում 1944 թվականին ստեղծված նպաստավոր իրադրությունը, Ալբանիայի Ազգային-ազատագրական բանակը ավարտեց ֆաշիստական զավթիչների վռնդումը բազմաչարչար ալբանական երկրից։ Ալբանիան դարձավ ազատ ու անկախ պետություն։ Երկրում իշխանությունն անցավ ժողովրդի ձեռքը։ Արդյունաբերությունը, տրանսպորտը, կապը, բանկերը և օտարերկրյա կոնցեսիաները ազգայնացվեցին։ Ժողովրդական իշխանությունը հողը հանձնեց նրանց, ովքեր մշակում են այն։*

✪ *Ալբանիայում, որի տերիտորիան գրեթե հավասար է Բելգիային, առաջներում չի եղել ոչ մի երկաթուղի, ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, ոչ մի թատրոն, բնակչության 80 տոկոսը ան-*



*գրագետ էր, 60 տոկոսը տառապում էր մալարիայով։*

*Անցած տասնմեկ տարում Ալբանիան դարձել է բարգավաճող ժողովրդա-դեմոկրատական պետություն։ Աշխատանքի պարտիայի ղեկավարությամբ ալբանական ժողովուրդը սոցիալիզմ է կառուցում, հաջողությամբ հաղթահարելով աճման դժվարությունները։*

*1955 թվականի վերջին Ալբանիայի արդյունաբերական արտադրությունը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ կաճի գրեթե 12 անգամ։*

*Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների օգնությամբ Ալբանիայում կառուցվել են բազմաթիվ արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ։ Ալբանիայի մայրաքաղաք Տիրանայում կառուցված է Էնվեր Խոջայի անվան մետաղամշակման գործարանը և Ստալինի անվան տեքստիլ կոմբինատը։ Այդ կոմբինատը տարեկան տալիս է մոտ 20 միլիոն մետր գործվածքեղեն։*

*Տիրանայի մոտ գտնվող լեռներում կառուցված է Լենինի անվան խոշոր հիդրոէլեկտրակայանը։ Երկրի գյուղական վայրերում գործում են նոր կառուցված ավելի քան 50 էլեկտրակայաններ։ Ալբանիայում էլեկտրաէներգիայի արտադրությունը նախապատերազմյանի համեմատությամբ աճել է ավելի քան 20 անգամ։ Կառուցվում են մի շարք նոր էլեկտրակայաններ, այդ թվում Մատի գետի վրա կառուցվող երկրի ամենախոշոր հիդրոէլեկտրակայանը՝ տարեկան 100 մի-*

լիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրական կարողությամբ։

✪ Լինելով իր երկրի ընդերքի տերը, ալբանական ժողովուրդը հաջողությամբ զարգացնում է լեռնային արդյունաբերությունը։ Արագորեն աճում է Ստալին քաղաքը՝ ռեսպուբլիկայի նավթահանքերի գլխավոր կենտրոնը։ Ալբանիայում նավթի հանույթը, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, աճել է ավելի քան հինգ անգամ։

Ալբանիան մեծ հռչակ է վայելում իր հիանալի բիտումով, որի արտադրությունը ավելի քան վեց անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Ածխի հանույթն ավելացել է 40 անգամ, քրոմինը՝ գրեթե 15 անգամ։

✪ Երկրում կառուցված է երկու շաքարի գործարան, որից միայն մեկը սեզոնի ընթացքում արտադրում է 700 հազար փութ շաքար՝ Ալբանիայի յուրաքանչյուր բնակչին 10 կիլոգրամ։

✪ Ժողովրդական իշխանության տարիներին կառուցված երկաթուղիները ռեսպուբլիկայի մայրաքաղաք Տիրանան կապում են Դուրես նավահանգստի, Կավայա, Ռոգոժինա, Պեկինի, Ցերիկ, Էլբասան քաղաքների հետ։

✪ Մեծ փոփոխություն են տեղի ունեցել ալբանական գյուղում։ Ֆեոդալական ճնշումից ազատագրված աշխատավոր գյուղացիությունն աշխատում է մեծ խանդավառությամբ։ Ցանքատարածությունը նախապատե-



րազմյանի համեմատությամբ ընդարձակվել է 70 տոկոսով։ Գյուղատնտեսության զարգացման նկատմամբ Ալբանիայի Աշխատանքի պարտիայի և ժողովրդական կառավարության կողմից ցուցաբերվող հոգատարության շնորհիվ՝ տասը տարում կառուցվել է 189 ոռոգիչ ջրանցք։ Ոռոգվող հողերի տարածությունն ավելացել է 3 անգամ։

✪ Ալբանիայում մշակվող գլխավոր հացահատիկային կուլտուրան եգիպտացորենն է, որը կազմում է բոլոր ցանքատարածությունների ավելի քան մեկ երրորդ մասը։ Տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունը ժողովրդական իշխանության տարիներին աճել է 12 անգամ։ Տարեցտարի ընդարձակվում է բամբակի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, բրնձի և այլ կուլտուրաների ցանքատարածությունը։ Զգալիորեն բարձրացել է բոլոր կուլտուրաների բերքատվությունը։

Ալբանիայի Աշխատանքի պարտիան և ժողովրդական կառավարությունը մշակել են ձիթենու, նարնջի, կիտրոնի, խաղողի և մյուս մրգերի արտադրությունն ավելացնելու 15-ամյա պլան։

✪ Տարեցտարի ավելանում է Ալբանիայի դաշտերում աշխատող մեքենաների քանակը։ Պատերազմից առաջ երկրում կար ընդամենը 4 տրակտոր, այն էլ պատկանում էր կալվածատերերին։ Այժմ ռեսպուբլիկայի ՄՏ կայաններն ունեն 1.400 տրակտոր (15-ուժանոցի փոխարկված)։

✪ Ալբանիայի գյուղացիներն աստիճանաբար անց-

նում են աշխատանքի կոլեկտիվ մեթոդներին։ Այժմ
երկրում կան 187 գյուղատնտեսական արտադրական
կոոպերատիվ և 190 հողի համատեղ մշակման ընկերու-
թյուն։ Գյուղատնտեսության սոցիալիստական վերակա-
ռուցման համար կարևոր նշանակություն ունի 20 պե-
տական տնտեսությունների աշխատանքը։

✪ Ալբանիայում այժմ ավարտվում է հասակավոր
բնակչության անգրագիտության վերացումը։ Քառամ-
յա, իսկ որոշ քաղաքներում յոթնամյա ուսումը պար-
տադիր է։ Ժողովրդական կառավարությունը ստեղծել
է վեց բարձրագույն ուսումնական հաստատություն։

Ռեսպուբլիկայում հրատարակվում է 37 թերթ և ամ-
սագիր՝ տարեկան 16 միլիոն օրինակ ընդհանուր տի-
րաժով։

Ժողովրդա-դեմոկրատական Ալբանիան Սովետական
Միության կողմից գլխավորվող խաղաղության, դեմո-
կրատիայի և սոցիալիզմի լագերի անկապտելի մասն
է։ ՍՍՌՄ և Ալբանիայի ժողովուրդները միմյանց հետ
կապված են եղբայրական խոր բարեկամությամբ։

Հենվելով դեմոկրատական լագերի ժողովուրդների
հզոր օգնության վրա, նրանց հետ սերտ համագոր-
ծակցած՝ ալբանական ժողովուրդը վստահորեն ընթա-
նում է սոցիալիստական շինարարության ուղիով։

---

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

# ՆՈՐՎԵԳԻԱ

Նորվեգիան ինդուստրիալ-ագրարային երկիր է և
գտնվում է Սկանդինավյան թերակղզու արևմտյան մա-
սում։ Նրա տարածությունը կազմում է 324,2 հազ.
քառ. կմ., բնակչությունը՝ 3 միլիոն 295 հազ. մարդ։
Նորվեգիան պառլամենտական թագավորություն է։

Նորվեգիայի էկոնոմիկայի մեջ առաջատար տեղ են
գրավում ծանր ու անտառային արդյունաբերությունը,
ինչպես նաև ծովագնացությունն ու ծովային արդյու-
նաբերությունը։

Նորվեգիայի էկոնոմիկայի մեջ խոշոր տեղ է գրա-
վում արտաքին առևտուրը։ Արտահանության հիմնա-
կան առարկաներ են՝ արդյունաբերական կիսաֆաբրի-
կատները, երկաթահանքը, ցելյուլոզան, նիկելը, ալ-
յումինը, ցինկը, ձուկը և ձկնամթերքները։ Նորվեգիա
են ներմուծվում սև և գունավոր մետաղներ, բամբակ,
մետաքսեղեն և պարենամթերքներ։

Ձկան որսի քանակով Նորվեգիան աշխարհում առա-
ջին տեղերից մեկն է գրավում (տարեկան որսում է
մինչև 1,4 միլիոն տոննա ձուկ)։ Նա տալիս է կետի
համաշխարհային որսի և վորվանի (ծովային կենդա-
նիների յուղը) համաշխարհային արտադրության կեսը։

Խոշոր է Նորվեգիայի առևտրական նավատորմը. նա իր ծավալով երրորդ տեղն է գրավում կապիտալիստական երկրների մեջ՝ զիջելով միայն ԱՄՆ-ին և Անգլիային։ Մշակվող հողային տարածությունը կազմում է ամբողջ երկրի տերիտորիայի մոտ 4 տոկոսը։ Գյուղատնտեսական արտադրանքն սպառվում է ներքին շուկայում և չի ապահովում Նորվեգիայի հացի պահանջները։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Նորվեգիան օկուպացվեց ֆաշիստական Գերմանիայի կողմից։ Նորվեգական ժողովուրդը իր կոմունիստական պարտիայի գլխավորությամբ համառորեն պայքարեց օտարերկրյա զավթիչների և նրանց կամակատարների՝ կվիսլինգների դեմ։ Նորվեգիան ֆաշիզմից ազատագրելու գործում մեծ դեր խաղաց Սովետական Միությունը։ 1944 թվականի աշնանը Սովետական հերոսական Բանակը ազատագրեց Հյուսիսային Նորվեգիան և 1945 թվականի մայիսի 8-ին Նորվեգիայում գտնվող հիտլերյան զորքերը կապիտուլյացիայի ենթարկվեցին։

Նորվեգիայի պրեմյեր-մինիստր Է. Գերհարդսենը Մոսկվայի օդանավակայանում 1955 թվականի նոյեմբերի 10-ին արտասանած ճառում ասաց. «Այսօր, պատերազմն ավարտվելուց տասը տարի հետո, որպես Նորվեգիայի պրեմյեր-մինիստր այցելելով Սովետական Միություն, ես կցանկանայի, որ սովետական հողում իմ առաջին խոսքերը լինեին սովետա-



կան այն կանանց ու տղամարդկանց հիշատակին, որոնք իրենց կյանքը տվեցին ընդհանուր գործի համար։ Նորվեգական ժողովուրդը չի մոռանա երկրորդ համաշխարհային պատերազմում սովետական ժողովրդի ավանդը և հատկապես նրա մասնակցությունը Նորվեգիայի ազատագրմանը»։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից հետո Նորվեգիան կախման մեջ ընկավ ամերիկյան կապիտալից։ 1948 թվականին նա ներգրավվեց «Մարշալլի պլանի» մեջ, իսկ 1949 թվականին ստորագրեց Հյուսիս-ատլանտյան պակտը (ՆԱՏՕ) և դարձավ այդ պակտի անդամ։ Վերջին ժամանակի իրադարձությունները ցույց են տալիս, որ կան հնարավորություններ սովետա-նորվեգական համագործակցության հետագա զարգացման համար։ Սովետական ու Նորվեգական ժողովուրդների մոտ կան բոլոր հիմքերը ապրելու բարեկամության պայմաններում և ամրապնդելու բարի դրացիական հարաբերությունները։ Վերջերս Սովետական կառավարության հրավերով մեր երկիրն էր եկել Նորվեգիայի պրեմյեր-մինիստր Է. Գերհարդսենը։ Սովետական Միությունում գտնված ժամանակ Է. Գերհարդսենը բանակցություններ վարեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամ Ն. Ս. Խրուշչևի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ Ա. Ի. Միկոյանի հետ։ Բանակցություններից հետո հրատա-

րակվեց սովետա-նորվեգական կոմյունիկե, որը երկու երկրների համագործակցության ու բարի դրացիական հարաբերությունների զարգացման կարևորագույն փաստաթուղթ է։ Կոմյունիկեում նշված է, որ սովետա-նորվեգական բանակցությունների ժամանակ կարծիքների անկաշկանդ փոխանակում տեղի ունեցավ ինչպես երկու երկրների հարաբերություններին վերաբերող հարցերի, այնպես էլ այդ երկրների շահերը շոշափող միջազգային մի շարք հարցերի շուրջը։ Բազմակողմանիորեն քննարկվեցին երկու երկրների տնտեսական կապերի հարցերը և որոշվեց է՛լ ավելի զարգացնել սովետա-նորվեգական առևտուրը և տնտեսական մյուս կապերը։ Համաձայնություն կայացվեց նըպաստելու գործարար շրջանների ներկայացուցիչների փոխադարձ ուղևորություններին՝ երկու երկրների արդյունաբերության և գյուղատնտեսության զանազան ճյուղերին ծանոթանալու համար։

Բանակցությունների արդյունքը հանդիսացավ նաև այն, որ նոյեմբերի 15-ին, Մոսկվայում ստորագրվեց արձանագրություն 1956—1958 թ. թ. ՍՍՌՄ-ի և Նորվեգիայի փոխադարձ ապրանքամատակարարումների մասին։

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД


Аг. ЕСАЯН. — Конституция Советского Союза . . . . . . 1

XX с'езд партии ознаменуем новыми успехами . . . . . . 9

В. ИСКАНДАРЯН.—Школа передового опыта . . . . . . . 16

ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ

Г. АВАКЯН. — За дальнейший под'ем продуктивности животноводства . 24

ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ

Расцветает народное хозяйство СССР (цифры и факты) . . . . . 32

В СТРАНАХ НАРОДНОЙ ДЕМОКРАТИИ

Албанский народ строит социализм . 40

СПРАВОЧНЫЙ ОТДЕЛ

Норвегия . . . . . . . 45


---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 22** **1955 г.**

*ՎՖ 13597* *Պատվեր 999* *Տիրաժ 8570*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

Գինը 50 կոպ.։